Ի՞ՆՉ Կ'ԱՆՑՆԻ ԿԸ ԴԱՌՆԱՑ ԹՈՒՐՔԻՈՅ ՄԷՋ

# ՑՐՈՒՈՒՄ ԵՒ ՔԱՅՔԱՅՈՒՄ

## ՁՆՁՈՒԱԾ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՈՒՍՈՒՑՈՒՄԸ ԿԸ ՎԵՐԱՀԱՍՏԱՏՈՒԻ

Համոզուելու համար թէ քէմալա-կան յեղափոխութեան կարգ մը մա-սերը աւաղի վրայ հիմնուած էին եւ հեղինակին մահէն յետոյ հովին պի-տի տրուին, կը բաւէ նկատի ունենալ լեզուական ճիւղին մէջ ծայր տուած հակազդեցութիւնը:

Զրոյցներու չէ որ կ'ակնարկեմ, այլ անվիճելի իրողութեանց:

Ամէնէն առաջ Կրթական նախարար Սաֆֆէթ Արըգանի հեռացումը:

Այս խելօքիկ մարդը, որուն փոքր եղբայրը Անգարայի ընդհանուր դա-տախազութեան կարեւոր պաշտօնը կը վարէ, սկզբունքի նկատումով է որ պաշտօնանկ եղաւ: Տեսնելով որ հարազատ Թուրքերէն լեզու չինելու մարմաջը, որմէ տարուած էր Աթա-թիւրք, կատարեալ աղէտ մը դարձած է, Իսմէթ Ինէօնիւ վճռապէս որոշեց վերջ տալ անոր: Ասոր համար ալ նախ փոխեց նախարարը, որ միաժա-մանակ նախագահն է Լեզուական Մի-ութեան, որուն դերն է բառ չինել կամ օտար բառերը Թուրքերէն հնչա-

...

Ըսել կ'ուզէ թէ պարզ ժողովուրդը, որուն կարելի չէ հրամայել, պատ-ժեց Աթաթիւրքը, ծաղրի ու զզուան-քի ենթարկելով անոր թխած լեզուն. բայց խեղճ ուսուցիչները եւ պաշ-տօնեաները ստիպուեցան ենթար-կուիլ, անօթի չմնալու համար:

Անտաճանաչում մըն է այս, որ կի-րարկելի է բազմաթիւ այլ մարզերու մէջ: Այսինքն, Թուրք ժողովուրդը չէ իւրացուցած քէմալական յեղաշրջու-մը եւ վախէն է որ ձայն չի հաներ: Իսկ ինչ որ կը ներկայացուի իբրեւ հանրային հաւանութիւն, արուեստա-կան է, պաշտօնական վարիչներու կողմէ սարքուած է: ...

...

նման կը խորհի եղեր եւ մենք բնա՛ւ, բնա՛ւ լուր չունինք եղեր ...

Շատ լաւ, արժէքաւոր եւ սիրելի Ֆալիհ Րըֆքը: Եթէ երբոր տարիէ ի վեր կողմնակից չէիք այդ լեզուական յորդութեանց, ինչո՞ւ չելաք եւ ՄԷԿ ՀԱՏԻԿ ԲԱՌ ՉԸՍԻՔ ՑԱՁՈՐԴ ԼԵԶ-ՈՒԱԿԱՆ ՀԱՄԱԺՈՂՈՎԻՆ ՄԷՋ: Ու-նի՞ք մէկ հատիկ յօդուած, որ իրա-ւունք տուած ըլլայ Հիւսէյին Ճահի-տի: Ինչո՞ւ չպաշտպանեցիք ձեր այս մարպետը որ ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆԸ Ա-ՂԱՂԱԿԵՑ եւ ՄԻՆԱԿ ՄՆԱՑ, իսկ այ-սօր կը գրէք թէ համամիտ էք անոր: Ընդհակառակն, այդ երբ տարուան ...

...

մարել Անգարայի մէջ, «մշակութա-յին կեանքը շահագրգռող նոր որո-շումներ տալու համար», ինչպէս կը ծանուցանէ «Սօն Փօսթա» (21 Յուն.

...

ինքզինքը պաշտպանած է եւ կը պաշտ-պանէ, բայց դպրոցները եւ հաստա-տութիւնները ստիպուած են հրամա-նով քալել:

# ԻՏԱԼԻԱ Ի՞ՆՉՊԷՍ ՍՏԱՑԱՒ ԵՒ ՑԵՏՈՅ ԼՔԵՑ ԻՐ ԲԱԺԻՆԸ ՓՈՔՐ ԱՍԻՈՅ ՄԷՋ

(Բ. եւ վերջին մաս)

Այն ատեն, տեսնելով որ կացու-թիւնը կը խանգարուի, Իտալացիները ուրիշ բան չեն ուզեր եթէ ոչ ազատել իրենց օճիքը:

Մինչ Յոյները իրենց ձախ թեւին վրայ, Ֆրանսացիները իրենց աջ թե-ւին վրայ կատաղօրէն կը կռուին Թուրքերուն դէմ, անոնք, Իտալացի-ները ոչ միայն կը բանակցին Թուրքե-րուն հետ, ոչ միայն կը պատրաս-տուին պարպել իրենց գրաւած շրջան-ները ի փոխարէն տնտեսական հաս-տատուն առաւելութեանց, ոչ միայն իրենց շրջաններուն մէջ Թուրք սպա-ներուն թոյլ կուտան յարձակողակա-նը պատրաստել մեզի դէմ, այլեւ ...

...

Այդ համաձայնութենէն կը սկսի ի-րենց սադրանքներուն խոլամոլութիւնը, որ այնուհետեւ ծաղկեցաւ Մարաշի Տաւրոս: Անոնք պարպեցին ... զոր իրենց գունդերը գրաւած ... միանալով քէմալական գունդերուն հետ: Բայց իրենց դաւաճանութիւնը, որ կ'ազատէր Թրքական այդ գունդերը, խզելով դաշնակիցներու ճակատը, օդին մէջ առկախ կը ձգէր Յոյները, իսկ Ֆրանսան կը դնէր վտանգաւոր շրջանին մէջ, հոն ուր ինչպէս այ վարպետ ըլլայ իր քաղաքականութիւնը, միշտ ենթակայ է հարուածներ ընդունելու»:

...



# ԳԷՈՐԳ ՄԱՐԶՊԵՏՈՒՆԻ

(ՊԱՏՄԱԿԱՆ ՎԷՊ)

Գրեց՝ ՄՈՒՐԱՑԱՆ

Այնուհետեւ նորից բարձրանալով վերին դաւիկոնը՝ զարթեցրեց Սեւա-դայի բարապանին, իմանալու համար թէ արդեօք կարո՞ղ է տեսնել իշխա-նին: Նրանց խօսակցութեան ձայնն ...

...

լապտերին եւ մի երկու փոքրիկ խու-ցեր անցնելով՝ մտաւ Սեւադայի ննջարանը եւ սղաւարտը հանելով մօ-տեցաւ իշխանի մահճակալին:

Սենեակը լուսաւորում էր տակա-ւին փոքրիկ արծաթեայ կանթեղը. ...

...

